# ՍՓԻՒՌՔԸ ԵՒ ՀԱՅՐԵՆԻՔԸ

... Անցան պատերազմի տարիները, տագնապով, այլ նաեւ յոյսերով, երբեմն ալ վարդագոյն: Աստիճանաբար պղտորեցաւ մթնոլորտը. կապերը թուլցան. կռնակները դարձան իրարու: Խանդավառութեան պահեր պոռթկացին, եւ դրեթէ նոյն ատեն, կամ քիչ ետք, պայքարի խօսքեր լսուեցան: Ծրագրուած գործունէութեա՞ն արդիւնք, յուսախաբութիւններո՞ւ հետեւանք,— երկուքն ալ թերեւս:

Անշուշտ միջազգային քաղաքական մթնոլորտը դեր ունեցաւ եւ ունի դեռ այս կացութեան մէջ: Յաղթանակին վառած կանթեղները՝ վառ չմնացին միշտ. խաղաղութիւնը չեկաւ: Պղտորեցան ազգերու յարաբերութիւնները: Փոխանակ ապագայ խաղաղ եւ անդորր տարիներու, փոխանակ «կարիքէ ու պատերազմի վախէ» զերծ ապագայի մը, մութ ապագայ: Յուսախաբութիւն՝ միջազգային կեանքին մէջ: Հայ կեանքը չէր կրնար չազդուիլ: Հզօրներու շունչը չէր կրնար անազդեցիկ անցնիլ: Միջազգային պառակտումը կ'արձագանգէր ինչպէս ուրիշներու, նոյնպէս մեր կեանքէն ներս: Միամիտ չէինք եւ, այսօր ալ, չենք, համերաշխութեան քարոզով, համերաշխ մնալու մասին: Կեանքը, երբեմն, աւելի հզօր է, քան մենք: Արտաքին պայմանները, յաճախ, աւելի բռնակալ են եւ երկաթէ, քան ազգերու ներքին որոշումները, անոնց կամքը:

Ունինք կեանքի այս փորձառութիւնը, բայց համոզուած ենք նաեւ որ ազգերը կրնան հակազդել, եթէ արթուն ըլլան, եւ կրնան պահել իրենց ոյժը: Առողջ մնալը՝ հզօր մնալ ըսել է: Միակամ մնալը՝ յաջողութեան կէսը եւ աւելին: Ինչ ալ ըլլան արտաքին պայմանները, ազգերը իրենց ներքին կեանքն ունին, իրենց սեփական աշխարհը, զոր կրնան անդորր պահել, որքան հնար է: Եթէ ոչ հարիւր առ հարիւր, գոնէ կէսով, գոնէ քառորդով, եթէ կարելի չըլլայ աւելին: Գիտակից, մշակուած ժողովուրդէ մը ա'ս կը պահանջուի: Ժողովուրդի մը գոյութիւնը, անոր հոգեկան ու ֆիզիքական առողջութիւնը ա'ս կը պահանջեն:

Հասկնալի է որ մեր կեանքը ազդուէր դուրսէն, արտաքին պայմաններէն: Բայց, ոչ այս աստիճան, Սփիւռքը խառնարան դարձնելու աստիճան, բոլոր ճակատներուն վրայ:

Պատճառներ շատ կային աւելի զօրաւոր ըլլալու, աւելի զգաստ ու միացած գործունէութեամբ:

Առաջինը այս պատճառներէն՝ Հայ Դատը, իր նոր կերպարանքով, իրականացման իր նոր հնարաւորութիւններով: Նոյն նպատակը՝ նոյն հայրենիքին համար եւ նոյն պահանջները.— բռնագրաւուած հողերու վերադարձում իրենց օրինաւոր տիրոջ՝ որ հայ ժողովուրդն է, այնքան տրորուած, այնքան զոհած ու արիւնաքամ եղած:

Կրցա՞նք մէկ ըլլալ Հայկ. Դատին շուրջ: Չյիշենք մանրամասնութիւնները: Այն ոյժերը, որոնք առնուազն կէս դարու կազմակերպուած պայքար մղած են Հայկ. Դատին համար, անոնք իրարու հետ եւ իրարու քով չեն այսօր, թէեւ համախոհ նոյն նպատակին շուրջ: Կուսակցութիւնները, բոլո'րը, գոյութիւն չունին. մէկ երկուքը մասնակից են, բայց լծուած պատահական, դեռ մինչեւ երէկ հանրային կեանքէ դուրս մարդոց, քաղաքական նախընթաց գործունէութենէ զուրկ, առօրեայ խմբաւորումներու կառքին: Վիրաւորելու համար չենք ըսեր «պատահական» բառը, այլ իրականութիւն մը ճշդելու համար: Եթէ ղեկավարութիւնը այս կամ այն կուսակցութեան կամ անոնց միացեալ ուժին ձեռքն ըլլար, հանդուրժելի պիտի ըլլար: Քաղաքական գործ կը տարուի, ուրեմն, այսպէս կամ այնպէս, բայց առանց համազգային հանդամանքի: Այս տեսակէտէն, նախորդ պատերազմին, Հայկ. Դատը աւելի համազգային դրոշմ ունեցած է, աւելի մէկ ու միացեալ հայութեամբ:

Կառավարութի՞ւն ունինք այսօր, այո', բայց ան չկայ հրապարակը եւ հազիւ զգալի է: Մնաց որ, աւելի հզօր պիտի ըլլար ան, եթէ ընդհ. խանդավառութեան հետ, կազմակերպուած պայքարին օժանդակութիւնն ալ վայելէր:

Երկրորդ եւ կարեւոր պատճառը հայութեան միացեալ գործունէութեան՝ ներգաղթը: Սերտօրէն կապուած Հայկ. Դատին, ներգաղթը գործնական առաջին քայլն է Հայկ. Դատի իրականացման, հայրենաշինութեան, հայրենիքի զօրացման ու առողջացման: Ինչո՞ւ միութեան ու զօրութեան աղբիւր չըլլար ան. ինչո՞ւ չըլլար ազգահաւաք մը լոկ, առանց քաղաքական ներքին հաշիւներու, առանց խտրականութեան: Առանց պայքարի, առանց պառակտումի: Եթէ ներգաղթի նպատակը առաւելագոյն չափով ներգաղթողներու քանակն է, ուրեմն՝ անհրաժեշտ էր որ առաւելագոյն միութիւնը, «միասնականութիւնը» գոյանար, հայաստանեան բացատրութեամբ: Կա՞յ տարակարծութիւն ներգաղթի շուրջ. չհանդիպեցանք մենք:

Հին թէ նոր պահանջ, ներգաղթը հաւասարակաց պահանջ մըն է բովանդակ հայութեան համար. նոյնիսկ այն Հայերուն համար, որոնք հարկադրաբար դուրսը պիտի մնան: Ինչո'ւ պառակտումը, ինչո՞ւ խտրական ոգին եւ դէչ կամ թերի կազմակերպութիւնը, որ չարիքներ միայն գործեց ու կը գործէ (Լիբանան - Սուրիա), ոչ միայն նիւթական, այլեւ բարոյական: Ինչո՞ւ պառակտումի տանէր ներգաղթը, կերպով մը դառնալով Դաշնակցութիւնը կամ երիտասարդական կազմակերպութիւնները քայքայելու առիթ ու ձգտում: Ջուր աքացի, բայց հարցուցա՞ծ ենք, թէ ներգաղթին նպատակը հայահաւա՞քն է թէ Դաշնակցութեան քայքայումը: Մէկը միւսին տեղը անցած է այս օրերուն: Չկայ հարցնող, թէ ի'նչ կ'ըլլար ներգաղթը առանց այս ոգիին, առանց խտրականութեան, ի'նչ չափերու կը հասնէր ան, եթէ սրբութիւններ ոտնակոխելու դարշ փորձը չըլլար եւ զանգուածները հոգեկան խորշանքի առջեւ չդրուէին: Չէ՞ որ այս զանգուածներուն մէջ հազարաւորներ կան, նոյն կազմակերպութեան շունչովը տոգորուած: Ի՞նչ շահ եւ ի'նչ օգուտ «ուրացող»ներէ, «հրաժարող»ներէ, որոնք կրնան նոյնքան դիւրաւ նոր հրաժարականներ ստորագրել օր մը:

Հայրենիքը նկարագիրներու պէտք ունի, հաւատաւոր մարդոց, սրբութիւն ունեցողներու, ո'չ ուրացողներու: Չե՞ն մտածեր այս բոլորի մասին, արտասահմանի «արբանեակ»ները, քանի որ, վստահ ենք, թէ ինքնակոչ «Հայաստանեան»ներու գործն է ստեղծուած այս ողբերգութիւնը, մեծ չափով մը:

Դիտեցէք Սփիւռքը, եւ հարցուցէք դուք ձեզի,— աւելի՞ պիտի պայքարէինք մեր թշնամիներուն դէմ, աւելի՞ պիտի ատէինք մեր ցեղային ոսոխները. աւելի՞ պիտի ուզէինք քայքայել:

Հա՞րկ է յիշել թէ մշակոյթի դետնին վրայ կը կրկնուի երեւոյթը, հայ միտքը դարձնելով նուաճուած, չըսելու համար ջլատուած այգի: Հայ միտքը իր ազատ թռիչքով, իր անկախ մտածողութեամբ ստեղծած է դարերու այն չքեղ գրականութիւնը, որ մեր ժողովուրդի փառքն ու զրահը կը կազմէ: Ստրկական ենթարկումով, անքննադատ ոգիով ու բերանաբաց հիացումով արժէք չի կրնար ստեղծուիլ: Ոչ ալ անմիտ ուրացումով եւ շահախնդրական դիտումներով արժէքներ կրնան աղարտուիլ:

Ազատատենչ ժողովուրդ է հայը, իր պատմութիւնը, ինչպէս մշակոյթը, ազատութեամբ լուսաւորուած: Գլխահակ կեցուածք մը դէպի կորանք, դէպի նսեմութիւն պիտի տանէր: Մինչ մեր ժողովուրդը վսեմին ու բարձունքին ձգտումովն է ապրած: Մեր հայրենիքն իսկ, երէկուանն ու այսօրուանը, այս ձգտումին արդիւնքն է. վաղուանը նոյնը պիտի ըլլայ:

Եզրակացնենք սակայն, ըսելու համար՝ թէ Սփիւռքը ոյժ մըն է մեր հայրենիքին համար, թանկագին ու հզօր ոյժ մը՝ իր համրանքով, իր նիւթականով, մշակոյթով, բարոյականութեամբ եւ այս բոլորին համադրութեամբը:

Պիտի գիտնա՞նք լաւագոյն կերպով, առաւելագոյն չափով ու ներդաշնակութեամբ հայրենիքին տրամադրել այս ամէնը: Միւս կողմէ՝ հայրենիքը պիտի գիտնա՞յ օգտուիլ լաւագոյն կերպով եւ մեծագոյն աստիճանով:

Մենք գծեցինք պատկերը, դիտելու եւ մտածելու առիթ մը միայն տալու համար: Թերեւս մըռայլ քիչ մը այս պատկերը, բայց իրական:

(Յուսաբեր)

# Բժ. Արա Տէր Առաքելեան

ԹԵՀՐԱՆ.— Սոյն տարւայ Յունիսի 15ին Գորգանի հիւրանոցներից մէկում, գիշերը, յանկարծամահ է լինում Մազանդարանի արեւմտեան մասում այնքա՜ն յարգուած Բժիշկ Արա Տէր Առաքելեանը (կրճատ՝ Առաքելեան)

Բժիշկը թունաւորուած է եղել ընթրիքի պահուն կերած պահածոյից:

Բժ. Արա Տէր Առաքելեանը զաւակն էր Վայոց Ձորի (Դարալագեազ) Մալիշկա գիւղի քահանայի, որի չորս տղաներից երկու կրտսերները՝ Վահանն ու Արան բարձրագոյն կրթութիւն էին ստացել:

Վահանը աւարտել էր Գէորգեան Ճեմարանը, ուր բնականից յաջող, լաւ ձայն եւ երաժշտութեան բուռն սէր ունենալով, հայ երգի մեծագոյն վարպետի՝ Կոմիտասի սիրած աշակերտներից մէկն է եղել: Ճեմարանը աւարտելուց յետոյ, զինուորական ծառայութիւնը կատարում է ռուսական բանակում եւ պահեստի սպայի աստիճանով ազատ արձակւում: Այնուհետեւ, Կոմիտասի խորհրդով, մտնում է Պետրոգրադի բարձրագոյն երաժշտանոցը որ ռուս երաժշտ. աշխարհի հռչակաւոր հաստատութիւններից մէկն էր, ուր պաշտօնավարում էին ականաւոր երաժշտագէտներ: Վահանը երաժշտական բարձր կրթութիւնը ստանում եւ միաժամանակ մշակում իր ձայնը: Անցեալ համաշխարհային պատերազմին կանչւում է բանակ եւ ամբողջ ժամանակ գործում կովկասեան ճակատում: 1920 թուին երբ Թուրքերը դաւադրօրէն յարձակւում են հայկական մանուկ Հանրապետութեան վրայ, նա Կարսում զօրահրամանատար Բէկ-Փիրումեանի զօրակայանի պետն էր եւ, Կարսի անկումից յետոյ, զօրավար Բէկ-Փիրումեանի եւ մի շարք այլ սպաների հետ՝ գերի է ընկնում եւ տարւում Էրզրում: Մէկ տարի վերջ, երբ Հայաստանը արդէն խորհրդայնացած էր, գերիները ազատ են արձակւում եւ վերադառնում երկիր, ուր նա դարձեալ նուիրւում է երաժշտութեան, որպէս դասատու:

Դեռ աշակերտական նստարանից Վահանը անդամագրուել էր Հ.Յ.Դաշնակցութեան եւ գործօն մասնակցութիւն ունեցել թէ Վաղարշապատի եւ թէ Վայոց-Ձորի կուսակցական աշխատանքներին: Ինչպէս լսեցինք, չորս տարի առաջ, Թիֆլիսում վախճանել է նաեւ Վահանը:

Արան սովորել է Մոսկուայի Լազարեան Ճեմարանում, ապա այնտեղի բժշկական համալսարանում, 1916ին աւարտում է այն եւ կանչւում զինուորական ծառայութեան, արեւմտեան ճակատում: Յաջորդ տարին փոխադրւում է կովկասեան ճակատ: 1918 Մայիսին, երբ Թուրքերը յարձակւում են Ալեքպոլի վրայ, Արան մի խումբ սպաների եւ զինուորների հետ շրջապատւում են թշնամու կողմից եւ հազիւ կարողանում են ազատուել:

Սարդարապատի, Բաշ-Աբարանի եւ Ղարաքիլիսէի հերոսական ճակատամարտերին Արան ճակատում գործող բժիշկներից մէկն էր:

Կռիւներից յետոյ, երբ համեմատական խաղաղութիւն է տիրում, Արամը, որի հանդէպ Արան պաշտամունք ունէր, հրահանգում է նրան մեկնել Վայոց-Ձոր, որպէս բժիշկ: Նա հաւատարիմ իր կոչման, ամենայն բարեխղճութեամբ կատարում էր իր պարտականութիւնները

Մանկութիւնից նրա վրայ շատ ազդած է իր մօրեղբայրը՝ նոյն շրջանի Բաշքենդ գիւղացի Ահարոն Բունիաթեանը, որ դրագէտ, ուսումն ու գիտութիւնը գնահատող մարդ էր: Ահարոնը, երիտասարդ հասակում անդամագրուած լինելով Դաշնակցութեան, Վայոց-Ձորի ամենաազդեցիկ գործիչն էր: Նա ամբողջ հոգով գիւղացիութեան շահերի պաշտպանն էր, զանազան վաշխառուներից ու հարստահարիչներից, որոնց դէմ բուռն պայքար էր մղում: Եւ որպէս Դաշնակցական իր շրջապատին քարոզում էր սիրով եւ անկեղծօրէն ծառայել ժողովրդին, պաշտպանել նրա շահերը եւ միշտ պայքարել յանուն ճշմարտութեան: Հայ-թաթարական ընդհարումներին, 1905 — 1906 թուին, որպէս Վայոց-Ձորի Կոմիտէի անդամ, խիստ գործօն դեր է կատարել, գիւղացիութիւնը զինելու գործում, Ռուսաստանից գաղտնի զէնքեր փոխադրելով: Փոխադրական այս գործին մասնակցել է նաեւ Արան, դեռ աշակերտական նստարանից եւ կասկածանքի տակ ընկնելով, ձերբակալուել գաւառական ոստիկանութեան կողմից, սակայն Ահարոնի ջանքերով ազատուել է: Ահարոնը խիստ համարձակ ու ճակատով մարդ լինելով, ոստիկանութիւնը հաշուի էր առնում նրան: Արան միշտ ակնածանքով էր յիշում իր քեռուն, որ մեռաւ Ռուսաստանում, 1922ին:

1920ի հայ – թրքական ձախաւեր պատերազմից անմիջապէս յետոյ, երբ Հայաստանը խորհրդայնացաւ, հանրապետական վերջին կառավարութեան վարչապետ ընկեր Ս. Վրացեանը, ինչպէս բոլոր գաւառները, նոյնպէս եւ Վայոց Ձոր հեռագրել էր՝ «ամէն կերպ զօրավիգ լինել նոր իշխանութեան ու լծուիլ գործօն, շինարար աշխատանքի»: Համաձայն այդ հեռագրի, Արան Եղ. Իշխանեանի եւ տեղական գործիչների հետ, գիւղացիական համագումարում ընտրւում է գաւառական Յեղկոմի անդամ ու նրանց հետ միասին վարում շրջանի գործերը: Սակայն երբ, շնորհիւ Աւիս Նուրիջանեանի եւ նման խելագարների վարած այլանդակ քաղաքականութեան ու հաստատած անհանդուրժելի ռէժիմի, պայթեց 1921ի Փետրուարեան համաժողովրդական տարերային ընդվզումը, բռնկուեց նաեւ Վայոց Ձորը: Ժողովրդական ոյժերը նահանջելով անցան Պարսից հիւրընկալ երկիրը, Արան էլ նրանց հետ տարագրուեց Պարսկաստան:

1921 աշնան, գործօն դեր կատարած է նաեւ Սալմաստի մէջ:

Յաջորդ տարին, գարնան, կառավարութեան կարգադրութեամբ, Արան հաստատւում է Ջուլֆայից տասը քիլոմեթրի վրայ գտնուող Ալամդար գիւղում, նոյնանուն շրջանի գիւղացիներին բժշկական օգնութիւն ցոյց տալու համար: Արան մնաց այնտեղ մէկուկէս տարի վայելելով շրջանի թուրք գիւղացիների համակրանքը, որպէս ժողովրդի բժիշկ – բարեկամ, եւ գործօն դեր կատարեց նիւթական խիստ ծանր պայմաններում գտնուող տարագիրներին երկիր վերադարձնելու գործում, իրեն հետ ունենալով Նիրհերցի հանգուցեալ Խէչօ Մանուկեանին, Այնազուրցի Մամիկոն Զաքարեանին եւ Արփեցի Արա Ղարախանեանին:

Մէկ տարի վերջ, հարկադրուած հեռանում է Ալամդարից անցնում նախ Ռաշտ, ապա Բաբոլսար եւ այնտեղից Բաբոլ, որտեղ մնում է մինչեւ անցեալ տարուայ Մայիս ամիսը: Վերջին տարիներում երիկամունքի հիւանդութիւնը հարկադրում է փոխադրուել Թէհրան, բայց յաջողութիւն չունեցաւ, եւ որոշեց նորից գնալ գաւառ:

Ահա, մէկն այն սակաւաթիւ դէմքերից, որոնք Կովկասից Պարսկաստան անցնելով, մնացին իրենց կոչման բարձրութեան վրայ, մինչեւ իրենց կեանքի վերջը:

Նա չարունակ հետեւում էր կէս մասնագիտա-

